# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԴԱՐՁԸ

## ՎԻԷՆԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Վիէնի կոմիտէին*

Այսօր, կիրակի կէս օրէ վերջ ժամը 3ին, Սէրքըը կաթոլիկի սրահին մէջ,

*կը նախագահէ ընկ. Ս. ԳԱԼՈՒՍՏԵԱՆ*

*կը խօսի՝ ընկ. ԾԱԻԱՐԾ ՄԻՍԱՔԵԱՆ*

*Գեղարուեստական ճոխ բաժին*

Հանդէսը պիտի սկսի օրուան տօնը խորհրդանշող գեղեցիկ պատկերով մը:

Մուտք՝ ծախսերու մասնակցութեան համար 1 ֆր.։

## ԱՌՆՈՒՎԻԼԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Վարդան ենթակոմիտէի*

*կը նախագահէ ընկ. Խ. ՄԿՐՏԻՉԵԱՆ*

*կը խօսի ընկ. Ա. ԻՍԱՀԱԿԵԱՆ*

Այսօր, կիրակի կէս օրէ վերջ ժամը 2.30ին, Salle Gallemantի սրահին մէջ, (կայարանին դիմացը)

*ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ*

*Կ'երգեն՝ Տիկ. Ս. Խաչատուրեան, Օր. Գնեալեան եւ Պ. Մ. Խուլոեան։ Կ'արտասանեն ընկ.ներ Օ. Կարապետեան, Յ. Երկանեան եւ Ս. Ճինեանեան։ Կարող ուժերով կը ներկայացուի Օտեանի ՏԱՅՐ ԿԱՐԱՊԵՏ կամ ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ՓԵՍԱՅՈՒՆ*

*3 արար, 2 ժամ խնդուք*

Մուտք 5 ֆր., անգործներու 3 ֆր.:

*ՊՈՐՏՕՅԻ ՄԷՋ.— Այսօր, կիրակի, կէսօրէ վերջ ժամը 3.30ին, Բարսեղ Շահպազ Ակումբին մէջ։ կը նախագահէ ընկ. ՊՕՂՈՍ ՄՆՃԵԱՆ կը խօսի ընկ. ԱՐՇԱԿ ՋԱՄԱԼԵԱՆ*

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

13 *Յունիս, շաբաթ երեկոյ*, **Brebant Marseillais**ի *սրահին մէջ։*

---

### «ՅԱՌԱՋ»Ի ՄՕՏ ԿԸ ԳՏՆՈՒԻ ՍԱԿԱՒԱԹԻՒ ՕՐԻՆԱԿՆԵՐՈՎ

**«ՀԱՅՈՑ ՀԱՅՐԻԿ»** (նուագող վշտից հայրենեաց)։ Առաջին հատոր (կենսագրութիւն)։ կազմեց՝ ՀԱՅԿ ԱՃԷՄԵԱՆ։ Ստուար հատոր մը, 556 մեծադիր էջերով եւ պատկերազարդ։ *Կը պարունակէ ոչ միայն Խրիմեան Հայրիկի կենսագրութիւնը, այլեւ պատմական եւ աշխարհագրական տեղեկութիւններ Վանայ նահանգի եւ ժամանակակից դէպքերու մասին։*

ԳԻՆ՝ 50 ՖՐԱՆՔ. Թղթակազմ եւ առանց հաշուելու թղթատարի ծախքը։

---

### ՇԱՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

—.—

*Ի գիտութիւն հայ ծնողաց կը տեղեկացնենք թէ Համազգայինի Լիոնի մասնաճիւղի սաննանց, Հայերէնի երկու դասընթացքները՝ մին Քուռ Լաֆայէթ եւ միւսը Ռիւ տիւ Պէկէն բով Մէրի Սանթրալի հրահանգին դադրած են մայիս 31ին, եւ կը վերսկսին յառաջիկայ սեպտեմբերին։*

*Կը խնդրուի, այն աշակերտներէն որ իրենց քով կը պահեն, իրենց բաժնուած դասագրքերը, հաճին վերադարձնել՝ 1. Քուռ Լաֆայէթի աշակերտները՝ Պ. Թադէոս Այվազեանի,* 27, Rue Dunoir, *իսկ Ռիւ տիւ Պէկէնի աշակերտները՝* 2. *Պ. Սիմոնեանի*, 14, Grande Rue Guillotière, Lyon, Rhône.

Ի դիմաց Համազգայինի Լիոնի մասնաճիւղի վարչութեան քարտուղար՝ *Թ. Այվազեան*։

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ԱՆԻԷՌ, Տիկ. Եկ.* — 70:
*ՊՕՄՈՆ, Գործ.* — 218.85:
*ԿՐԸՆՈՊԼԸ, Գալ.* — 140:
*ՓԱՐԻԶ* (16), *Տիկին Թամ.* — 70:
*ՔՈՒՐՊԸՎՈՒԱ, Լաճ.* — 70:
*ՆԱՆԹԷՐ, Մ. Թոր.* — 50:
*ՖՕՆԹԷՆ, Փէփ.* — 140:
*ԳՈՆՍԹԱՆԹԻՆ, Ս. Մ.* — 35:
*ՆԻՒ ԵՈՐՔ, Հ. Յ. Դ. Ակ.* — 200:
*ՎԱԼԱՆՍ, Գործ.* — 272.50:
*ՆԻՍ, Պ. Պէր.* — 140:
*ՀԱՅԼԱՆՏ ՓԱՐՔ, Ագ. Ակ.* — 200:
*ԱՎԻՆԵօն, Նաթ.* — 140:
*ՈՒՕՐՔԵՍԹԸՐ, Հ. Յ. Դ. Ակ.* — 200:
*ՊՈՐՏՕ, Գործ.* — 206:
*ԿՐԸՆՈՊԼԸ, Թիֆ.* — 75: 2
*ԿՐԸՆՈՊԼԸ, Օր. Միք.* — 35:
*ԼԱՎԱԼՊԱՐԵԼ, Պօլ.* — 50:
*ԹՈՒԼՈՒԶ, Ղ. Մար.* — 200:
*ՄԱՐՍԷՅԼ, Յ. Կար.* — 253.20:
*ՊՈՄՕՆ, Գործ.* — 214:
*ՓԱՎԻՅԵՈՆ ՍՈՒ ՊՈՒԱ, Զպուք.* — 100 :
*ՓԱՐԻԶ* (16), *Տիկին Թամ.* — 70:
*ԱՌՆՈՒՎԻԼ, Գնիալ.* — 35:
*ՄԱՐՍԷՅԼ, Թ. Նիկ.* — 70:
*ՍԷՆ ՔՕԼ, Ս. Ֆ.* — 140:
*ՏԷՕՅԼ, Մ. Ագ.* — 105:
*ՍԷՆ ՓՐԷՍԹ, Ս. Շիր.* — 70:
*ՆԻՍ, Յար.* — 35:



## PETITES ANNONCES

### ՕԳՏԱԿԱՐ ՀԱՍՑԷՆԵՐ

**ԲԺԻՇԿՆԵՐ.—**

**Dr. L. KRIKORIAN**
Ներքին եւ վեներ. հիւանդութիւններ
**126, Rue du Fbg. St. Denis, Paris (10)**

ՍԵԴՐԱԿ ՍԱՍՈՒՆԻ
*Վիրաբոյժ-Ատամնաբոյժ*
**16, Rue de Vaugirard, Paris (6)**
Մէթրօ՝ Օտէօն կամ Սէն Միշէլ

ՏՕՔԹ. ԱՍԼԱՆ
Ներքին եւ վեներական հիւանդութիւններ, **34, Bld. de Clichy,** մէթրօ **Pigalle, Tél.: Mon. 76-65,** ամէն օր ժ. ը **2—8:**

**ԴԵՐՁԱԿՆԵՐ.—**

Գ. ԱՃԷՄԵԱՆ
Արանց եւ կանանց
**42, Rue Blanche,** մէթրօ՝ **Trinité**

ՊՕՂՈՍ ԳՈՐԳԻԿԵԱՆ
Խնամուած կար, չափաւոր գին
**31, Route de Choisy, Ivry s/Seine**
Հեռաձայն **Italie 13 - 45**

**ՆՊԱՐԱՎԱՃԱՌՆԵՐ.—**

ՀԱՅԿԱԿԱՆ ՆՊԱՐԱՎԱՃԱՌԱՏՈՒՆ
Արեւելեան ամէն տեսակ ապրանքներ
**4, Rue de Metz**
մէթրօ՝ **Strasbourg - St. Denis**

ՆՊԱՐՎ. **CONSTANTINOPLE**
Արեւելեան և եւրոպական ապրանքներ
**37, Rue de Trévise**
մէթրօ՝ **Cadet** **Tél.: Prov. 82 - 96**

OFFICE NANSEN
**38 Boulevard Raspail — Paris (6)**

ԹՈՐԳՈՄ ՆԱԼՊԱՆՏԵԱՆ
Կերպասեղէնի ներկայացուցիչ
**141, Bld. de Magenda,** Փարիզ (10)

**LONDON PRESSING - HOKDANIAN**
Հագուստ մաքրել եւ արդուկել։ Զեղչուած գին, Մօնթ-մարթրի Հայերուն։
**15, Rue Gerando,** մէթրօ՝ **Anvers.**

Եփրատ նուագախումբի համար դիմել Պ. Տիգրան Օնոսեանի, 15, Rue du Pareir, Clamart (Seine). Tél. Observatoire 13—45.


**Le Gérant: H. STEPHAN**
**Imprimerie A. DER (AGOPIAN)**
**17, Rue Damesme, PARIS (13)**




ՕՐ. ՄԵԼԻՆԷ ՔԵՆԻՐԵԱՆ
եւ
ՎԱՀՐԱՄ ՇԱՀՊԱԶԵԱՆ
Ամուսնացած
23, Rue le Boyer, Lyon
*Լիոն*, 30 *մայիս* 1936

ՕՐ. ԿԻԼԻԿԻԶԱՐ ԹԱԹԼԸԵԱՆ
եւ
ԳԵՂԱՄ ԳԸՅԸՃԵԱՆ
Ամուսնացած
Լիոն 31, մայիս 1936 Ռօան

---

### ՅԵՏԱՁԳՈՒԱԾ Է *Յունիս 21ին*

*Պանթէօ-Բաշանի «Յառաջդիմասիրաց» Միութեան դաշտահանդէսը որ տեղի պիտի ունենար Յունիս 7ին։*

---

**ՅԵՏԱՁԳՈՒԱԾ Է** *Մուրատ Ռաֆայէլեան կրթական հաստատութեանց հարիւրամեայ յոբելեանական հանդէսներու առթիւ կազմակերպուած Գ. Մ. ԱԼԻՄՇԱՀԻն նուագահանդէսը, որ տեղի պիտի ունենար Յունիս 21ին։*

---

### ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷՔ...

*Սէն-Լուի (Մարսէյլ) Հայ Երիտասարդաց «Մասիս» մարզական Միութեան տարեկան դաշտային խնջոյք-պարահանդէսին,* տեղի կ'ունենայ 28 Յունիս կիրակի օր Նօթեդբայրեաններու ագարակին մէջ աննախընթաց պատրաստութեամբ:

*Հայկական եւ եւրոպական պարեր մասնաւոր նուագախումբով, առատ կեր ու խում պատրաստուած մասնագէտներու կողմէ, պահեստ եւլն.։*

ԾԱՆՕԹ — Եթէ կ'ուզէք լաւ ժամանց մը անցնել եւ սատարել Հայ երիտասարդութեան, փութացէք դէպի հանդիսավայրը առաւօտեան ժամը *10*էն սկսեալ: փափաքողները կրնան ճաշերնին միասին բերել:

## ԹՈՒՐՔԻԱ ԻՐ ՀՈԳԵՐՈՎ ՈՒ ՓՈՐՁԵՐՈՎ

# «ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ՎՏԱՆԳԸ»

Վերջերս մամուլը արձագանգ տըւաւ երկու հակասական լուրերու։

Առաջինը այն ճառն է, որ Թուրքիոյ վարչապետը՝ Ըսմէթ Ինէօնիւ խօսեցաւ Գամուլթայի բեմէն, ելմտացոյցի վաւերացման առթիւ վստահութեան քուէ պահանջելով։

Ըսենք անմիջապէս, որ Ըսմէթի ճառը, իր ընդհանուր գիծերով, կրկնու-

հարկադրուած կը զգայ ինքզինքը՝ «իր բերնով» ապահովցնելու իր հայրենակիցները, որ «հանդարտօրէն եւ ապահովութեամբ զբաղին իրենց պարտականութիւններով եւ գործերով»։

Բայց, ո՞ւրկէ ծնած է, «հայրենակիցներուն» մօտ, այդ անհանդարտութիւնը եւ անապահովութիւնը,— Ըս-

...

գնելով, ... թեան պահպանման մասին Թուրքիոյ զօրաւոր ցանկութիւնը։

Այս եւ նման ճառեր, նախ, կը մատնեն, անշուշտ, ապառազինութեան պիտանէին յաւելեալ քանակը։ Ըսմէթ ինք ալ կը խոստովանի այդ պարագան, երբ նոյն ճառին մէջ կ'ըսէ թէ «երկրին ներսը, այս խօսքերս կոչուած են հայրենակիցներուն յիշեցնելու իրենց պարտականութիւնները»։

Երկրորդ, Թուրքիոյ վարչապետը

...

ցուցին շարք մը խօսակցութիւններ՝ Թուրքիոյ արտաքին գործավարութեան խորհրդականին հետ։ Խօսակցութիւնները գլխաւորաբար կապ ունէին Տարտանէլի վերազինութեան հետ, բայց երկու պետութեանց ներկայացուցիչները զբաղեցան նաեւ Իտալիոյ դէմ գործադրուած պատժամիջոցներով։ Թուրքիա լրջօրէն կը կասկածի Իտալիոյ ծաւալումէն՝ Պալքաններու մէջ։ Կ'ըսուի թէ իր ներկայացուցիչները այս առթիւ շատ թանկա-

...

Մուսոլինին, որուն ժէսթերն ու ձեռնարկները անվերջ հեգնեց Թուրք մամուլը, բայց որուն խստաբիր դէմքը անհանդարտութեան մատնած է Թուրքիոյ «հայրենակիցները», Գամութայն ու «յաղթական վարչապետը»...

Վ. ԻՇԽԱՆԵԱՆ

---

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՐՏՔԸ ԱՆԳԼԻՈՅ

— . —

Համաձայն Անգլիոյ ելմտական նախարարութեան 1936ի հաշուեկշռին, Հայաստանի հանրապետութեան ընդհանուր պարտքն է 1.765.000 ստերլին։

Առաջին անգամ 1921ին էր որ Հ. Հ. Լոնտոնի պատուիրակութիւնը «յուշագիր կը ստանար» այս պարտքին մասին որուն մանրամասնութիւններն աճապարեն.—

| | | |
|---|---|---|
| Դեղօրայք | 23.426 | 6.8 |
| Զէնք | 39.446 | 18.6 |
| Ծախքեր | 723.644 | 5.11 |
| Գումար | 786.516 | 11.1 |

Այս դեղերը եւ զէնքերը Երեւանի համար ճամբայ ելած էին 1920ին, բայց շատ ուշ հասան։ Անգլիա ոչ միայն «մոռցած չէ» այս պարտքը, այլ ամէն տարի տոկոս մըն ալ կը բարդէ համաձայն օրուան սակին։ Այսպէս,

| | |
|---|---|
| 1922ին | 786.517 |
| 1925ին | 908.069 |
| 1926ին | 1.071.000 |
| 1927ին | 1.126.000 |
| 1928ին | 1.183.000 |
| 1929ին | 1.244.000 |
| 1930ին | 1.308.000 |
| 1931ին | 1.375.000 |
| 1932ին | 1.445.000 |
| 1933ին | 1.519.000 |
| 1934ին | 1.598.000 |
| 1935ին | 1.679.000 |

---

## ՀԱՅԿԱԿԱՆ ՇԱՐԺԱՆԿԱՐ

# ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

— . —

Մարդոց մեծ մասը աշխարհագրութիւնը ջնջած է պատմութեան մէջէն ու պատմութիւնը աշխարհագրութեան մէջէն։ Այս գործողութիւնը ընողները աշխարհագրութեան մէջ ձըգած են միայն խաւարակուռ Ափրիկէն ու պատմութեան մէջ ... աղքատ Ղազարոսը։

Կը գրեն որ Մատրիտի մէջ թերթեր կան որոնք Իրանը կը շփոթեն Իրաքի հետ։ ...

...

ՆՇԱՆ ՊԵՇԻԿԹԱՇԼԵԱՆ

---

# 1896Ի ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՄԵԾ ԴԷՊՔԵՐՈՒ 40ԱՄԵԱՅ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ԱՌԹԻՒ

— . —

Իմ ազիզ ախպէրը անզուսպ ուրախութեամբ կուռի գնաց, ինչպէս իրեն նման հարիւրաւոր ազիզ կորիւններ, անոնք գացին մեռցնելու եւ մեռ-

նոյն նամարտ թշնամու ձեռքով, այսօր առաւել քան հաստատ մեր ուխտին մէջ նորէն նոյն միակ լեզուն կը սորվեցնենք ու կը յանձնարարենք

...

ԱՐՄ. ՓՈԽԱՐԵԱՆ

(Շար.)

(3)

տալ հաւաքական ապահովութեան դրութեան եւ որոշեց գործադրել զանոնք»:

*** Ցառաջիկայ երեքշաբթի, արտաքին նախարարը Երեսփ. Ժողովին եւ Ծերակոյտին պիտի ներկայացնէ Ժողովրդային Ճակատի կառավարութեան արտաքին քաղաքականութիւնը եւ քաղաքական ներկայ կացութիւնը: Բազմաթիւ երեսփոխաններ հարցապնդումներ պիտի ընեն այդ առթիւ:

## Թորէզ կը խօսի Մարսիլիոյ մէջ

Ֆրանս. Համայնավար կուսակցութեան ընդհ. քարտուղարը ճառ մը խօսեցաւ Մարսէյլ, միթինկի մը մէջ:«Փըթի Փարիզիէն» 3000 կը հաշուէ ներկաներու թիւը, «Իւմանիթէ» կը հասցնէ մինչեւ 50,000:

Թորէզ պարզեց համայնավար կուսակցութեան յառաջդիմութեան պատճառները եւ աւելցուց որ իրենց կուսակցութիւնը յամառօրէն կ'աշխատի Սովետներու Ֆրանսական հանրապետութիւն ստեղծել եւ միաժամանակ կարգը պահպանել: Գործադուլները, որ ներկայիս կը յայտարարուին քաղաքէ քաղաք եւ վերջ կը գտնեն բանուորներու յաղթանակով, քաղաքական որ եւ է նպատակ չեն հետապնդեր, այլ միայն աշխատաւորական շահեր՝ մղուած տնտեսական մտահոգութիւններէ: Ոմանք կը քննադատեն բանուորներու կատարած ճնշումը եւ հակօրինական կը գտնեն գործարաններու «գրաւումը», սակայն այդ ընթացքով կը ստեղծուի «նոր օրինականութիւն մը», որ ծնունդ կ'առնէ իրաւապահանջ դասակարգին աշխատաւորական կեանքէն: Ցետոյ անդրադառնալով դրօշի հարցին, Թորէզ աւելցուց թէ իրենց կը պատկանի եռագոյնը, թէ զայն պիտի պարզեն իբրեւ Հանրապետութեան խորհրդանշան:

Ի վերջոյ կանգ առաւ Ժողովրդային Ճակատի կառավարութեան առաքելութեան վրայ եւ յայտարարեց թէ ներկայ կառավարութիւնը իշխանութեան գլուխ եկած է դարմանելու համար այն չարիքը, զոր գործեցին նախորդ կառավարութիւնները ի վնաս արհեստաւորներուն, մանրավաճառներուն, նախկին ռազմիկներուն, որոնք կը կքին տուրքերու տակ: Դարմանելու համար այդ չարիքը, ըսաւ, կայ միայն մէկ միջոց,— այնպէս ընել որ հարուստները շատ վճարեն:

*** Մարսէյլի մէջ գործադուլի հոսանքը կը մեղմանայ հետզհետէ: Երէկ խաղաղ էր քաղաքը: Կարգ մըվաճառատուներ բացուեցան շաբաթ օր, իսկ մեծ վաճառանոցները կը բացուին երեքշաբթի: Մարսէյլի ցոյցերուն մասին, որոնք տեղի ունեցան մինչեւ ուրբաթ, կարդալ մեր Թղթակիցին նամակը, Բ. էջ:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԴԱՐՁԸ

### ՊՈՄՕՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Պօմօնի Զաւարեան Ենթակոմիտէի եւ հովանաւորութեամբ Մարսէյլի Շրջ. կոմիտէի

Այսօր, կիրակի երեկոյ ժամը 8ին, վարանդեան սրահին մէջ,

**10 Bld. des Marguerites**

կը նախագահէ ընկ. **ՀԱՅԿ ՍԵՐԷՆԿԻՒԼԵԱՆ**

կը խօսի ընկ. **Շ. ՄԻՍԱՔԵԱՆ**

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ: ՆՈՒԱԳ, ԵՐԳ, ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ եւլն.:

Շարժանկարով կը ցուցադրուին 1914էն մինչեւ 1921 թուի Հայ Ազատագրութեան յայտնի դէմքերը ու գլխաւոր դէպքերը:

Ծախքերու մասնակցութիւն 2 ֆրանք:

### ՍԷՆԹ ԱՆՏՐԷԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Ընկ. Կարօ եւ Վռամեան քոյր ենթակոմիտէներու, մասնակցութեամբ Աւօ խումբի եւ հովանաւորութեամբ ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻ

Այսօր, կիրակի կէս օրէ վերջ ժամը 2ին, Սէնթ-Անտրէ Պէլվէտէրի օդասուն պարտէզին մէջ:

կը նախագահէ ընկ. **Ա. ԱՐՄԱՂԱՆԵԱՆ**

կը խօսի ընկ. **Շ. ՄԻՍԱՔԵԱՆ**

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ: Մուտքը ազատ է:

ԾԱՆՕԹ.— Փափաքողները կրնան կիրակի առաւօտուն երթալ: Քաղաքէն եկողները կրնան առնել Քուռ Պէլզէօնէն 25 թիւ հանրակառքը եւ իջնել թէրմինիւս:

### ՌՈՒՄԱՆԻ ՄԷՋ

21 Յունիս, կիրակի կէս օրէ վերջ ժամը 2.30ին,
Ընկերվարաեաններու սրահը:
կը խօսի ընկ. ՀԱՅԿ ՍԵՐԷՆԿԻՒԼԵԱՆ

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Կազմակերպուած Իսի լէ Մուլինոյի Զաւարեան կոմիտէի կողմէ Հայաստանի անկախութեան տարեդարձին առթիւ

21, Յունիս կէսօրէ վերջ ժամը 2ին, Պուլվար Ռօտէն Փանիկեանի սրճարանը

կը խօսի ընկ. ԳԻՒԼԽԱՆԴԱՆԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին

Մուտք 5 ֆր.:

## Դաշտահանդէս եւ Ներկայացում

Ռօպէնսոնի դարատանին մէջ, **MAISON FIQUET**

Փարիզի Հարաւային շրջանի «Յառաջդիմասիրաց» միութեան կողմէ, ի նպաստ վարժարանին

Այսօր, առաւօտեան ժամը 10էն մինչեւ գիշերուան ժամը 10

ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

Կը ներկայացուի Ե. Օտեանի եւ Մ. Կիւրճեանի ՉԱՐՇԸԼԸ ԱՐԹԻՆ ԱՂԱ

ղեկավարութեամբ ՆՇԱՆ ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆի:

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՍՆԱԿՆԿԱԼՆԵՐ

Թառ եւ ռուսական նուագախումբ

Անձրեւի պարագային ապահով մեծ սրահ:

Մուտք 3 ֆրանք:

Ճոխ պիւֆէ, դիւրամատչելի գիներով:

Հաղորդակցութեան միջոց.— Porte d'Orléansէն առնել 128 թիւ հանրակառքը, որ միայն երեք թիքէով ձեզ պիտի տանի մինչեւ Ռօպէնսոն, թէրմինիւս:

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉԻ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ

### 1500ԱՄԵԱԿԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ ՍԱՐՍԷԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Համազգայինի Մասնաճիւղին եւ Հ. Յ. Դ. Հրայր խումբի եւ մասնակցութեամբ Հայ Արիներու:

Այսօր կիրակի կէս օրէ վերջ ժամը 2.30ին
Կը նախագահէ՝ Ա. ՋԱՄԱԼԵԱՆ

Կը խօսին՝ Ա. ԽՕՆԴԿԱՐԵԱՆ եւ Խ. ՆԵՐՍԷՍԵԱՆ (Հայ Արիներու կողմէ)

Կ'երգեն՝ Տիկին Ս. Խաչատուրեան, Պ. Մ. Խուպօեան, կ'արտասանեն Պ. Պ. Ա. Աճէմեան, Հ. Դաւիթեան, Ե. Երկանեան եւն.:

Խմբերգ եւ զանազան խաղեր դպրոցի փոքրիկներուն կողմէ:

Ծախքերու մասնակցութեան համար կը գանձուի 2 ֆրանք:

Կառ. տիւ. Նօրէն շոգեկառք՝ 1.43 եւ 1.51ին:

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ՊՏՈՅՏ

Կազմակերպուած ՍԻՓԱՆ-ԿՈՄԻՏԱՍ երգչախումբին կողմէ

28 Յունիս, կիրակի, Garcheի անտառը

Ժամադրավայր՝ St. Lazareի կայարանին մէջ, Monuments aux Morts

առաւօտեան ժամը 9ին: Մեկնում ամէնաուշը 9.30ին:

Երգչախումբի անդամներ եւ համակիրներ կրնան մասնակցիլ իրենց ընտանիքով: Հաւաքական տոմսակի զեղչ բոլորին համար:

Ճաշը միասին բերել: Մուտք չկայ:



## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶԻ Մարզուանցիներու Հայր. Միութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր անդամներն ու անդամուհիները 28 Յունիս, կիրակի կէս օրէ վերջ ժամը 3ին, 40 rue de Belville: Խիստ կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն: Ներկաներու թիւը բաւական պիտի համարուի:




Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme, PARIS (13)




## ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷՔ...

Սէն-Լուի (Մարսէյլ) Հայ Երիտասարդաց «Մասիս» մարզական միութեան տարեկան դաշտային խնջոյք-պարահանդէսին, տեղի կ'ունենայ 28 Յունիս կիրակի օր Եօթեղբայրեաններու ագարակին մէջ աննախընթաց պատրաստութեամբ:

Հայկական եւ եւրոպական պարեր մասնաւոր նուագախումբով, առատ կեր ու խում պատրաստուած մասնագէտներու կողմէ, զաւեշտ եւլն.:

ԾԱՆՕԹ — Եթէ կ'ուզէք լաւ ժամանց մը անցնել եւ սատարել Հայ երիտասարդութեան, փութացէք դէպի հանդիսավայրը առաւօտեան ժամը 10էն սկսեալ: Փափաքողները կրնան ճաշերնին միասին բերել:

մարձակի՞ք դիս ալ հոտած անուանել, այո կամ ոչ:

—Այո՛, դուք ալ հոտած էք:

Եւ սկսաւ աննկարագրելի աղմուկ մը: Նախագահը հրամայեց դուրս ելլել, ուէքսիւթը պատասխանեց.

— Միայն բռնի ուժով դուրս կ'ելլեմ:

Նախագահին հրամանով, երկու բարապաններ եկան եւ դուրս հանեցին զայն:

Փօլ Հիմանս դառնօրէն կ'ողբայ պեղժ արդի խորհրդարանը:

— Խորհրդարան չէ, գինետուն է, ուր ամէն ժամ կը վախնաս որ գլխուդ գաւաթ կը նետեն:

Կը թուի թէ հրապարակը մաքրագործողներու, «աւլողներու» կուսակցութիւնը, Ռէքսիսթները դեռ շատ աւելի կատաղի յարձակումներ պիտի գործեն կառավարութեան վրայ:

Գ. ՇԷՀՐԷՐԵԱՆ սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանէ իր սիրելի հօր դառնաղէտ մահը որ տեղի ունեցաւ յունիս 25ին, Նիսի մէջ:



### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Խորին ցաւակցութիւններս կը յայտնեմ Այրի Տիկին Սրմենուհի Ղազարեանի եւ Պ. Ղազար Ղազարեանի իրենց աղջկան եւ քրոջ՝ ԱԶԱՏՈՒՀԻի դառնաղէտ մահուան առթիւ:

ՀՌԻՓՍԻՄԷ ԿԻՆՃԱՆ

St. Martin d'Uriage (Isère)

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Մեր խորին շնորհակալութիւնները կը յայտնենք ամէն անոնց, որոնք անձամբ կամ նամակով իրենց ցաւակցութիւնը յայտնեցին մեր սիրելի աղջկան եւ քրոջ՝ ԱԶԱՏՈՒՀԻի դառնաղէտ մահուան առթիւ:



### Կ'ՈՒԶՈՒԻ

Հայ երիտասարդ աղջիկ մը տնական աշխատանքներու համար, կ'ուզուի նաեւ հայ պառաւոր եւ առանձին ապրող հայ կին մը (40 — 50) տարեկան, որ տրամադիր ըլլայ տնեւակա-նապէս մեզ մօտ մնալու: Ինքը մօր մը դերը պիտի կատարէ տան մէջ: Գրել՝ Davitի, 21, Rue Malakof, Asnières, Seine:



ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

"ՎԷՄ,, ի Ժ Դ. թիւը հետեւեալ բովանդակութեամբ.—

Գ. ԳԻՒԶԱԼԵԱՆ՝ Մեծ Ցոբելեանի առթիւ: ՏՈՔԹ. ՎԱՀՐԱՄ Ց. ԹՈՐԳՈՄԵԱՆ՝ Ցուշատետրէս: ՇԱՌԼ ԴԻԼ՝ Հայկական ճարտարապետութիւնը: Հ. Գ. ՆԱՀԱՊԵՏԵԱՆ՝ Հայաստանի գմբէթաւոր եկեղեցիները: ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ՝ Նպաստ մը Հայ եւ Թուրք աշուղական գրականութեան: Ա. ԲԵՐԲԵՐԵԱՆ՝ Միքայէլ Նալբանդեանցի անտիպ երկերը: ՎԱՀԱՆ ՄԻՆԱԽՈՐԵԱՆ՝ Արհաւիրքի օրեր: ՎԱՀԱՆ ՓԱՓԱԶԵԱՆ՝ Համաշխարհային պատերազմը եւ Տարօնի աշխարհը: ՀԱՅԿ ԱՃԷՄԵԱՆ՝ Բագրատ վարդ., Գէորգ Թաւաքալեան: Անցեալը: Կեանք եւ մշակոյթ: Գիրք եւ մամուլ: Գրախօսական: Ցաւելուած: Վ. ՄԱՆԿՈՒՆԻ՝ Գէորգ Դ. եւ իր ժամանակը:

Տարեկան բաժնեգին՝ 70, 60 եւ 50 ֆրանք, համաձայն իւրաքանչիւր երկրի թղթատարական սակի:

Երրորդ շրջանի բաժանորդները կրնան առաջին երկու տարիներու 12 թիւերը ստանալ վճարելով 50 ֆրանք, կամ վեց գրքի համար 25 ֆր.

Հասցէ.— S. Vratzian, 13 Rue des Platanes, Gité Jardin de Plessis-Robinson, (Seine).




**Le Gérant: H. STEPHAN**

**Imprimerie A. DER (AGOPIAN)**

**17, Rue Damesme. PARIS (13)**

LE PREMIER QUOTIDIEN ARMENIEN EN EUROPE

# ՅԱՌԱՋ

# HARATCH

ՕՐԱԹԵՐԹ՝ ԱԶԳԱՅԻՆ, ՔԱՂԱՔԱԿԱՆ, ԳՐԱԿԱՆ

(Fondé en 1925) :-: R. C. Seine 276.286

Directeur et Propriétaire : SCH. MISSAKIAN
Rédaction et Administration
ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆ ԵՒ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ
17, Rue Dameme, PARIS (13e)
Téléphone : Glacière 15 - 70
(ՆՐԹԵՒԵԿԻ ՀԱՄԱՐ՝ Métro : TOLBIAC)

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐ,— ՏԱՐԵԿԱՆ ՎԵՑԱՄՍԵԱՅ ԵՌԱՄՍԵԱՅ

| | | | |
|---|---|---|---|
| Ֆրանսա եւ գաղութներ | 140 փրանք | 70 փրանք | 35 փր. |
| Անգլիա, Եգիպտոս, Զուիցերիա, Իտալիա | 250 » | 130 փրանք | — |
| Ամերիկա եւ ուրիշ երկիրներ | 200 փրանք | 100 փրանք | — |

ԵՐԵՔՇԱԲԹԻ 30 ՅՈՒՆԻՍ
MARDI 30 JUIN 1936

12 ՏԱՐԻ — 12e Année No. 3153

Խմբագիր՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

ԳԻՆ 50 ՍԱՆԹԻՄ

# ՎԵՐՋԻՆ ԺԱՄ

## ՏԱԼԱՏԻԷԻ ՃԱՌԸ

### «Մեր բանակը ի վիճակի է ապահովելու երկրին ամբողջականութիւնը»

Կիրակի, Զօր. Հօշի յիշատակին հանդիսութիւն մը տեղի ունեցաւ Վեր-սայլի մէջ, ուր ճառ մը խօսեցաւ ազգ. պաշտպանութեան նախարար Տալատիէ:

Նախ ներկայացուց Հօշի կեանքը.— Զաւակն էր Թագաւորին ձիապանին: Ինք եւս, պատանեկութեան, ձիապանի պաշտօն կատարեց պահ մը: Յետոյ զինուորագրուեցաւ, ազգ. պահակազօրքին մէջ յիսնապետի աստիճանին հասաւ, յեղափոխութեան շրջանին՝ դեռ 25 տարեկան, հրամանատար նշանակուեցաւ Մոզէլի բանակին, աւելի վերջ ընդհ. հրամանատար՝ Սամպրի, Մէօզի եւ Հռենոսի բանակներուն, յետոյ կը ղրկուի Վանտէ իբրեւ հրամանատար զսպիչ ուժերու, պահ մը կը բանտարկուի իբրեւ կասկածելի, յետոյ ազատ կ՚արձակուի եւ հրամանատար կը նշանակուի իրլանտական արշաւախումբին, բայց կը մեռնի նոյն տարին, 29 տարեկան:

Հօշ կը մարմնացնէ մաքուր հայրենասիրութիւնը, ամբողջովին առողջ-ուած հանրապետական սկզբունքներով:

— Հօշի ոգեկոչումը ապարդիւն պիտի ըլլար, շարունակեց Տալատիէ, եթէ մենք, հանրապետականներս, չփորձենք դաս առնել իր անձնուէր կեանքէն՝ պաշտպանելու համար Ֆրանսայի հանրապետական դիմագիծը: Մեր երկիրը խորապէս կը բաղձայ խաղաղութեան, բայց կը կարծէ թէ այդ խաղաղութիւնը կը կայանայ բոլոր երկիրներու անկախութեան եւ ազատութեան մէջ: Գիտէ թէ զինադադար օր մը բոլորս պիտի առաջնորդէ ամէնէն ահաւոր պատերազմին, որուն վախճանը կործանումն է Եւրոպայի:

Այսօր, Ժողովրդային Ճակատի մեր կառավարութիւնը Ժընեւի մէջ ի գործ կը դնէ իր ամբողջ կորովը՝ ազգերը միացնելու համար այն մեծ խօսքին, որ է՝ անբաժանելի խաղաղութիւն, հաւաքական ապահովութիւն, երաշխիք փոխադարձ պաշտպանութեան: Մենք յոյս ունինք որ Եւրոպայի բոլոր պետութիւններըպիտի ուզեն լսել մեր կոչը եւ իրենց ճիգերը պիտի նուիրեն կրճատելու սպառազինութիւնները աստիճանաբար եւ հակակշռի տակ:

Որոշ է, սակայն, որ սպասելով հանդերձ այդ օրուան՝ Ֆրանսա իրեն պարտականութիւն կը համարի բարելաւել իր պաշտպանութեան միջոցները: Ճիշդ է որ ատոր համար հարկ է ծանր զոհողութիւններ կատարել, բայց այդ զոհողութիւնները կը կազմեն մեր երկրին ազատութեան պայմանն իսկ: Միւս կողմէ, ընկերային բարեկարգութեանց այն խիզախ փորձը, զոր կը թելադրեն կատարել արդի ժամանակները, կարելի պիտի չըլլար ի կատար ածել՝ եթէ ազգային պաշտպանութիւնը ապահովուած չըլլար ամբապէս:

Այս խրողութեանց առջեւ, սակայն, Հանրապետութեան թշնամիները, հետեւելով իրենց նախորդներուն՝ երբեմնի տարագիրներուն, նոյն փորձը կը կատարեն՝ ուզելով վարկաբեկել կամ ջլատել մեր աշխատանքը: Անոնք ցոյց կուտան նոյն ագիտութիւնը հանդէպ ժողովրդային ոգւոյն, վատաբանելու եւ խուճապ ստեղծելու նոյն հոգեբանութիւնը ամէն բանի մասին, որ կը փոր-ձուի բովանդակ Ֆրանսայի բարիքին համար, առանց նոյնիսկ քաշուելու պղտորելէ մեր պաշտպանողական ուժերը: Դեռ վերջերս, առանց մտահո-գութիւն ցոյց տալու թէ ինչ ծանր հետեւանքներ կրնան ունենալ իրենց այդ յարձակումները սահմաններէն անդին, անոնք մեր բանակին կուտային ծիծա-ղելի պատկեր մը, անկարողութիւն վերագրելով բանակին, որպէսզի մեր երկ-րին մէջ ստեղծուի տխուր խուճապ մը՝ կարծելով թէ այդ խուճապը պիտի ծառայէր իրենց յետին միտքերուն:

Ճշմարտութիւնն այն է, սակայն, որ Ֆրանսայի Հանրապետութեան բանակը կատարելապէս ի վիճակի է, ներկայանալիք բոլոր պարագաներուն մէջ, ապահովելու երկրին ամբողջականութիւնը: Վասնզի, Հանրապետութեան այդ բանակը արտայայտութիւնն իսկ է ամբողջ ժողովուրդին, ազատ եւ մեծ ժողովուրդի մը: Շնորհիւ այդ բանակին, հայրենիքը յաղթական դուրս եկաւ այն բոլոր դժուարութեանց մէջէն, որոնց պիտի չկարենար տոկալ ուրիշ որ եւ է վարչաձեւ: Այսօր, ֆրանսական բանակը հաշտեցնելով իր ամէնէն գեղեցիկ աւանդութիւնները արդիական ռազմագիտութեան հետ, փոխած է իր մեթոտները եւ տարածած՝ իր գործունէութեան դաշտը: Մեր բանակը ներկայ է սահմաններուն վրայ իր մասնագիտական զօրամասերով, որոնք կը պահպանեն ամրացեալ եւ պաշտպանողական դիրքերը: Այդ անսասան պատնէշին ե-տեւ, բանակը ունի իր պահեստի ուժերը, ինչպէս եւ մեքենաշարժ զօրամասերը, որոնք պատրաստ են հասնելու ամենայն արագութեամբ ամենուրեք: Մեր բանակը լոկ մնջիկորքան կը շարունակէ կատարելագործել իր ցամաքայինուժերը, նոյնքան եւս կ՚աշխատի ապահովել ծովային եւ օդային ուժերու գործակցութիւնը հաւանական յարձակումի մը ընթացքին:

Վերջապէս, բանակը տոգորուած է կարգապահութեան եւ պարտաճանաչութեան սքանչելի ոգիով մը: Մէկ խօսքով, բանակը պատրաստ է ծառայելու Հանրապետութեան՝ յանուն անոր անկախութեան եւ ազատութեան պաշտպանութեան:

## ՍԱԼԵՆԿՐՕՅԻ ՃԱՌԸ

Ներքին նախարար, Սալէնկրօ, կիրակի Ռուպէ գնաց, ուրկէ ձայնասփիւռով ճառ մը խօսեցաւ: Իրմէ վերջ խօսեցան նաեւ աշխատանքի նախարարը, Ժան Լըպա, եւ մարզախաղերու եւ զբօսախաղերու դեր - նախարարը, Լակրանժ:

Ներքին նախարարը նախ յայտարարեց.

— «Մենք չենք այն կառավարութիւններէն, որոնք իշխանութեան գլուխ գալէ վերջ ուրիշ մտահոգութիւն չունին, բայց եթէ սիրաշահիլ: Մենք թոյլ պիտի չտանք որ քուրջի կտորի մը տեղը դրուիմեր ծրագիրը,պիտիչուրանանք մեր ստորագրութիւնը, հաւատարիմ պիտի մնանք մեր երդումին:

Մենք վճռած ենք ճակատ կազմել ամբոխավարութեան դէմ՝ եթէ որ եւ է ժամանակ հանդիպինք մեր ճամբուն վրայ, մենք վճռած ենք յուսախաբութեան չմատնել այն միլիոնաւոր անհատները, որոնք իրենց յոյսը դրած են մեր վրայ, մենք հաշտ եւ միացած կը մնանք կառավարութեան մէջ, հաշտ եւ միացած՝ խորհրդարանին մէջ, հաշտ եւ միացած ամբողջ երկրին մէջ: Այդ միութեամբ, եւ միայն այդ միութեամբ, պիտի գործադրենք այն ծրագիրը, զոր ստորագրեցին մեր կուսակցութիւնները միասնաբար»:

Յետոյ խօսելով գիներու բարձրացման մտահոգութեան մասին, Սալէնկրօ յայտարարեց թէ կառավարութիւնը պիտի զբաղի այն անդրադարձումներով, որոնք տեղի պիտի ունենան շուկային վրայ աշխատավարձերու յաւելումին հետեւանքով, ինչպէս եւ այն անդրադարձումներով, որոնք տեղի պիտի ունենան համայնքներու պիւտճէներուն վրայ՝ կառավարական նոր կարգադրութեանց հետեւանքով: Այս առթիւ սպառնաց խստիւ պատժել անոնք որ շահադիտութեամբ կը զբաղին:

Յետոյ խօսելով գործադուլներուն մասին, ըսաւ թէ բանուորներուն շահն իսկ կը պահանջէ չափազանցութիւններով չնսեմացնել իրենց յաղթանակները: Գալով լիկերու լուծման հարցին, յայտարարեց թէ լուծման հրովարտակները պիտի գործադրուին՝ մերժելով ճանչնալ որ եւ է միջամտութիւն, որեւէ իրաւարարութիւն, եւ առանց տկարութեան դոյզն նշանի:

## Տորիօ կուսակցութիւն կը հիմնէ

Ժաք Տորիօ, որ անջատուեցաւ համայնավար կուսակցութենէն, Սէն-Տընիի քաղաքապետարանին մէջ հաւաքոյթ մը կազմակերպելով ներկայացուց իր նորակազմ կուսակցութեան սկզբունքները:

Նախ խիստ քննադատութեան մը ենթարկեց Ռուսիոյ մէջ փորձուած յեղափոխութիւնը եւ Մոսկուայէն ներշնչուելու ընթացիկ աւանդութիւնը: Ընկերվարութիւն հիմնեցի՞ն միթէ Ռուսիոյ մէջ: Խորտակեցին դասակարգերը, բայց անոնց տեղ ստեղծեցին նոր դասակարգ մը: Այժմ այդ դասակարգն է որ կը շահագործէ «մարդկային նիւթը»: Ո՞ւր մնացին համայնավարներու խոստումները:

Երբ ներկայիս ձախողած են համայնավարական փորձերը Ռուսիոյ մէջ, ի՞նչպէս մարդիկ կ՚ելլեն փորձել նոյն սխալը Ֆրանսայի մէջ,— պրոլետարիատին անունով կ՚աշխատին քանդել մանր - քաղքենի դասակարգը, մանր եւ միջին առեւտրական դասակարգը: Յեղափոխութի՞ւն կ՚ուզեն փորձել, բայց Ֆրանսա յեղափոխութեան դաս առնելու պէտք չունի ուրիշէն: Մնաց որ սովետական իշխանութեան հաստատումը Ֆրանսայի մէջ ուրիշ հետեւանք պիտի չունենայ, բայց եթէ համեւրոպական պատերազմ: Ստալինին նպատակն է իր երկրին սահմաններէն հեռացնել գերմանական սպառնալիքը՝ արեւմտեան ճակատ փոխադրելով,— այդ է ռուսեւֆրանսական դաշնագրին իմաստը:

Իրերու այս կացութեան մէջ է ահա, որ Տորիօ կը կանգնի՝ ներկայացնելով իր կուսակցութեան յաւակնութիւնները: Տորիոյի կուսակցութիւնը կը կոչուի «Ֆրանսական Ժողովրդային կուսակցութիւն», որուն դիմագիծը կը կրէ երկու նշանակ,— ազգային եւ ընկերվարական: Ազգային, որովհետեւ պատրանք է միջազգայնականութիւնը, պատրանք մը որ աղէտ պիտի առաջնորդէր Ֆրանսան: Ընկերվարական, որովհետեւ դրամատիրութենէն պիտի առնէ ինչ որ օգտակար է, անոր արգիլելով որ տնօրինէ երկրին ճակատագիրը: Դասակարգային գիծ պիտի չունենայ իր կուսակցութիւնը, ընդհակառակն դռները բաց պիտի ըլլան բոլոր անոնց առջեւ, որոնք կը տառապին ներկայ ընկերային վիճակներէն,— բանուոր, գիւղացի, մտաւորական, միջին եւ մանր արդիւնաբերող: Ժողովրդային կուսակցութիւնը կ՚ուզէ ստեղծել պետութիւն մը, որ վարէ երկրին ուժերը: Ֆրանսա մեծ ցնցում մը կրած է, ժամանակ է որ գերագոյն ճիգ մը փորձուի երկրին անկախութիւնը ամրացնելու: Ֆրանսա ստրուկներու երկիր չէ:

Վերջապէս, Ժողովրդային կուսակցութեան ծրագիրը կարելի է ամփոփել երկու խօսքով,— պայքար ընկերային պահպանողականութեան դէմ, պայքար արտաքին վարդապետութիւններու թափանցումին եւ Մոսկուայի միջամտութեան դէմ:

Երբ Տորիօ աւարտեց իր ճառը, ամբողջ հանդիսականները բացագանչեցին.

— Սէն - Տընի, յառա՜ջ ...

## Պառաւ աղջիկները կ՚արշաւեն Լոնտոնի վրայ

Ուրբաթ օր Լոնտոն հասաւ անգլիացի պառաւ աղջիկներու արշաւախումբը: Երկրին բոլոր անկիւններէն հաւաքուելով, բանակի մը պէս անոնք խուժեցին Լոնտոնէն ներս:

Տունը մնացած աղջիկներու կազմակերպութեան հիմը դրուած է 9 Ապրիլ 1935ին: Ի՞նչ կը պահանջեն:

Առաջնորդին յայտարարութեան համաձայն, «անոնք որ ոչ համբոյրի մը մեղրը ճաշակած են, ոչ ալ մեղրալուսին», կ՚ուզեն վայելել որբեւայրիներուն հետ համահաւասար իրաւունքներ: 1925ի օրէնքով, կառավարութիւնը շաբաթական 40 փրանք թոշակ կը յատկացնէ այն բոլոր ամուրիներուն, այր թէ կին, որոնք 65 տարիքը կը թեւակոխեն ու շաբաթական 240 փրանքէն պակաս հասոյթ մը ունին: Սակայն այդ թոշակառուները պարտաւոր են ապահովագրական սնտուկներուն վճարել շաբաթական՝ այրերը 6 ֆր. 50, իսկ կիները 4.70: Արամբի կիներն ալ (էրիկ ունեցող) 55էն վերջ իրաւունք ունին ստանալու այդ թոշակը՝ առանց որ եւ է բան վճարելու: Արդ, պառաւ աղջիկները կ՚ուզեն որ իրենց եւս իրաւունք տրուի թոշակ ստանալու 55էն վերջ, ոչ թէ 65էն վերջ:

Ամբողջ Անգլիոյ մէջ թոշակառու որբեւայրիներուն թիւն է 700,000, իսկ ամուրիներուն թիւը (16էն 65 տարեկան) մօտաւորապէս 4 միլիոն: Պառաւ աղջիկները կը կազմեն 175,000 հոգի:

Ահա յանուն այս բազմութեան է որ Լոնտոն հասած են չատեր՝ բողոքելու եւ որբեւայրիներուն համահաւասար իրաւունքներ պահանջելու: Ապահովագրական սնտուկներուն մէկ փէննի տուած չունին որբեւայրիները, կ՚ըսեն անոնք, մենք միայն կը լեցնենք այդ սնտուկները, եւ հանգստեան թոշակ ստանալու համար շատ ուշ է 65ը:

Պառաւ աղջիկները հաւաքոյթ մըն ալ ունեցան Լոնտոնի մէջ, ուր երգուեցան տունը մնացած աղջիկներու վրայ յօրինուած երգեր: Ճառախօս մը յայտարարեց.

— «Ընկերուհիներ տունը մնացած աղջիկներու միութեան, մեր կազմակերպութիւնը կոչուած է էրիկութիւն ընելու, ճիշդ ինչպէս անգլիացի պատուական էրիկը»: Եւ բանաձեւեց իրենց պահանջները եւ իրաւունքները:

Իրենց անունէն պէտք չէ ենթադրել, որ հիմա թոռմած, առաջ ալ տկռած աղջիկներ են ատոնք: Անոնց մէջ կան աղջիկներ, որոնց 200 անգամ ամուսնութեան առաջարկ եղած է, բայց «չիմ ու չում» ըսած՝ մերժած են,— թէեւ հիմակ ալ չա՛տ կը փնտռեն:

## Հող կը տրուի Յունաստանի Հայերուն

Յոյն խորհրդարանական յանձնախումբը գաղթականներու զետեղման մասին նոր օրէնք մը ղրկեց խնամատարական նախարարութեան: Այս օրէնքին համաձայն, դիւրութիւններ պիտի տրուին գաղթականներուն հողեր գնելու համար: Այսպէս, այն գաղթականները, որոնք 8 տարիներէ ի վեր «փարանկաներու» մէջ կը բնակին, իրաւունք ունին հող եւ 15 հազար տրախմի փոխառութիւն մը ստանալու:

Նոյն օրէնքին մէջ կ՚ըսուի թէ քրիստոնէացած մահմետականները եւ ծնունդով ու կրօնքով Հայերը, որոնք հելլէնահպատակ եղած են, կրնան գաղթականական տուներ ունենալ:

«Նոր Օր» այս լուրը տալով կ՚աւելցնէ.— Ինչպէս ծանօթ է, մինչեւ այժմ գաղթականներու զետեղման օրէնքը իրաւունք կուտար միայն ծնունդով հելլէններուն: Վերեւ կատարուած փոփոխութիւնը խիստ մեծ նշանակութիւն ունի:

Այս առթիւ ըսենք, որ քանի մը ամիսներ առաջ Պ. Տամասկինոսի ընկերակցութեամբ Թագաւորին ներկայացած միակ հայ պատուիրակութիւնը իր խնդրագրին մէջ շեշտած էր հպատակութեան հարցը եւ երկրորդ՝ հայ գաղթականներու զետեղումը, առանց պետութեան վրայ բեռ ըլլալու պետական գինով հողեր ստանալով:

Այդ խնդրագիրը Թագաւոր Եօրկիոսի կողմէ յանձնարարուած է կառավարութեան եւ վարչապետ Մեթաքսասի կողմէ հայ գաղթականներուն օգտակար կարգադրութիւններ սկսած են ըլլալ, ինչ որ մինչեւ այժմ անտեսուած էր եւ առկախ մնացած:

## 450 պանդոկներ կը փակեն իրենց դռները

Ֆրանսայի Միջերկրականեան գեղածիծաղ եզերքներուն վրայ, Քանի պանդոկապետները ժամանակէ մը ի վեր վէճ ունէին իրենց ծառայողներուն հետ: Կարելի չըլլալով համաձայնութեան գալ, Քան որոշեց փակել պանդոկներուն դռները:

Համերաշխութեան սկզբունքով, Քանի հետեւեցան նաեւ Նիս, Մանթոն, Անթիպ, Ժուան - լէ - Փէն եւ բոլոր Միջերկրականեան քաղաքները, որոնք զբօսաշրջիկներու գլխաւոր հանգրուաններն են:

Պանդոկապետները գոց դռներուն վրայ փակցուցած են յայտարարութիւն մը, ուր կ՚ըսուի, թէ ծառայողներու հետ կարելի չըլլալով համաձայնութեան գալ, միւս կողմէ ընկերային նոր օրէնքներուն պատճառով մեծ դժուարութիւններու մատնուած՝ ուրիշ միջոց չեն գտած, բայց միայն փակել իրենց դռները:

*** Ժամանակէ մը ի վեր Նիսի հանրակառքերը եւս գործադուլ յայտարարած էին, բայց վերսկսան աշխատանքը երէկ, երկուշաբթի:

Աշխատանքի նախարարին իրաւարարութեամբ՝ վերջ գտաւ Պորտոյի հանրակառքի գործադուլը:

Փէրփինեանի Առեւտրական Սենեակի անդամները հրաժարեցան՝ պատճառաբանելով որ բանթող գործաւորները չեն յարգած սեփականութեան իրաւունքի, ինչպէս նաեւ աշխատանքի իրաւունքներու պաշտպանութեան սկզբունքները:

## Մեծարանք Ռուժէ տը Լիլի

Կիրակի կէսօրէ վերջ փառաւոր հանդիսութիւն մը կատարուեցաւ Շուազիլը Ռուայի մէջ: 20,000 հոգի հաւաքուած էին Ռուժէ տը Լիլի հրապարակին վրայ: Ամբողջ քաղաքը դրօշազարդուած էր եռագոյնով: Ռուժէ տը Լիլի հըսկայ արձանը հագուեցուցած էին կապոյտ, ճերմակ եւ կարմիր շղարշներով: Գլխուն ալ՝ փռիւգեան աւանդական կարմիր գդակը:

Հանդիսութեանց կը նախագահէր օդանաւային նախարարը, Փիէր Քոթ:

Դպրոցներու աշակերտները եւ մարզական միութեանց անդամները երգեցին Մարսէյեզը, անոնց կ՚ընկերանար քաղաքապետական նուագախումբը: Շուազիի քաղաքապետը բեմ բարձրանալով հրաւէր կարդաց բոլոր Ֆրանսացիներուն՝ միանալ, մէկ սիրտ մէկ հոգի զանգուած մը կազմել: Յետոյ բեմ բարձրացաւ Թորէզ, համայնավար կուսակցութեան ընդհ. քարտուղարը, որ պանծացուց Ֆրանսայի հանրապետական առաքինութիւնները: Ամէնէն վերջ խօսեցաւ օդանաւային նախարարը, որ ներկայացնելէ վերջ Ռուժէ տը Լիլի կեանքը, աւելցուց թէ չկայ ազգային քայլերգ մը, որ այնքան աւելի ֆրանսական ըլլայ, որքան Մարսէյեզը:

Հանդէսը աւարտեցաւ, յետոյ նուագախումբին առաջնորդութեամբ՝ մարզիկները թափօր կազմեցին եւ մարզարան գացին:

## Եթովպիա հռովմէական արծիւին թեւերուն տակ

Զօր. Վալլէ, որ վերջերս Պերլին գնաց եւ օդանաւային իտալեւգերմանական համաձայնութիւն մը կնքեց, օրագրողի մը հետ տեսակցութեան ընթացքին կը յայտարարէ թէ Եթովպիա կը գտնուի հռովմէական արծիւին թեւերուն տակ: Հիմնուած են օդանաւային ութ գլխաւոր կայաններ, ուրկէ թռիչ կ՚առնեն իտալական արծիւները, օդանաւերը, իրենց գերիշխանութեան տակ պահելու համար Յուդայի առիւծը, Եթովպիան: Այսպէս, Եթովպիա պիտի պահպանուի օդանաւային ոստիկանութեամբ մը, որուն կեդրոնը հաստատուած է Ատտիս - Ապէպայի մէջ, ուր պատրաստ կը սպասեն պահեստի օդանաւերը՝ զինուոր հասցնելու համար ապստամբած շրջաններուն: Օդանաւային իւրաքանչիւր կայան օժտուած է անթելի գործիքով մը: Իտալիա 300 օդանաւ ունի Եթովպիոյ մէջ, 200ը զինուորական օդանաւեր են, 100ը փոխադրական, որոնք կրնան, ժամական 400 քիլոմեթր արագութեամբ, 2500 զինուոր փոխադրել որ եւ է շրջան:

Զօր. Վալլէ աւելցուց որ վաղուան պատերազմը տեղի պիտի ունենայ օդին մէջ,— օդանաւն է գլխաւոր զէնքը, որ թէ աչք է, թէ թնդանօթ, թէ զինուորական գործողութեան առաջնակարգ միջոց:

## ՅՈՒՆԱՍՏԱՆԻ ՀԱՅԿ. ԴՊՐՈՑՆԵՐԸ ԿԸ ՓԱԿՈՒԻՆ

### Հայերէն լեզուն կ՚արգիլուի

«Հորիզոն»էն ցաւով կը տեղեկանանք թէ Յունաստանի կրթական նախարարութիւնը հրատարակած է յունիս 15 թուակիր հրամանագիր մը, որ կ՚ըսէ.

— Կրթական խորհուրդը, նկատի ունենալով Հայերու կողմէ տրուած աղերսագրերը հիմնելու համար հայկական վարժարաններ, որոնց հիմնարկու-

(Լուրերու շարունակութիւնը կարդալ Դ. էջ)

